Պրոլետարներ բոլոր երկրների, միացե՛ք

ՀԿ(Բ)Պ ԿԵՆՏԿՈՄԻ
ՊՐՈՊԱԳԱՆԴԱՅԻ ԵՎ
ԱԳԻՏԱՑԻԱՅԻ ԲԱԺԻՆ

# Ագիտատորի ԲԼՈԿՆՈՏ



№ 16 1948

«ՍՈՎԵՏԱԿԱՆ ՀԱՅԱՍՏԱՆ»-Ի ՀՐԱՏԱՐԱԿՉՈՒԹՅՈՒՆ

կան գործողությունները մեր երկրի դեմ։
Մեզ մոտ սովետական կարգեր հաստատվելուց հետո, օգտվելով երիտասարդ սովետական երկրի դեմ Անգլիայի, ԱՄՆ-ի ու Ֆրանսիայի կազմակերպած ինտերվենցիայից, Ճապոնիան օկուպացրեց Հեռավոր արևելյան երկրամասը, և չորս տարի շարունակ հոշոտում էր մեր ժողովրդին, կողոպտում էր Սովետական Հեռավոր Արևելքը։

Դրանից քսան տարի հետո ճապոնական իմպերիալիստները նորից հարձակվեցին մեր երկրի վրա Խասան լճի շրջանում, իսկ 1939 թվականին Խալխին-Գոլի շրջանում, նպատակ ունենալով գրավել Հեռավոր Արևելքը։

Իմպերիալիստական ֆաշիստական Ճապոնիան, հանդիսանալով Հեռավոր Արևելքում ագրեսիայի օջախ, մշտական սպառնալիք էր ներկայացնում Սովետական Միության համար, և դրան իր պատասխան մեր երկիրը մշտապես ամրապնդում էր իր հեռավոր արևելյան սահմանները։

Հիտլերյան ֆաշիստական Գերմանիայի ջախջախումից հետո, մեր երկիրը լարված աշխատանքի ձեռնարկեց գերմանական զավթիչների կողմից ավերված ժողովրդական տնտեսությունը վերականգնելու, նոր ֆաբրիկաներ ու գործարաններ կառուցելու հա-



մար։ Բայց քանի դեռ Արևելքում գոյություններ պատերազմի երկրորդ օջախը՝ իմպերիալիստական Ճապոնիան, որը մերժեց Ամերիկայի Միացյալ Նահանգների, Մեծ Բրիտանիայի ու Չինաստանի պահանջը անվերապահ կապիտուլյացիայի մասին, Սովետական երկիրը չէր կարող իր անվտանգությունն ապահովված համարել։

Սովետական Միությունը, հավատարիմ լինելով իր դաշնակցային պարտքին, ընդունեց դաշնակիցների առաջարկը, և պատերազմի վիճակ հայտարարեց ընդդեմ Ճապոնիայի։ Սովետական կառավարության այդ որոշումն ամբողջ սովետական ժողովրդի միահամուռ հավանությանն ու աջակցությանը արժանացավ իբրև միակ ճիշտ որոշում որն ապահովում էր մեր արևելյան սահմանների անվտանգությունը և ընդհանուր խաղաղության ամենաարագ վերականգնումը։

1945 թվականի օգոստոսի 9-ի առավոտյան սովետական զորքերը, Խաղաղօվկիանոսյան նավատորմի ռազմանավերն ու զորամասերը Հեռավոր Արևելքում մարտական գործողություններ սկսեցին ճապոնական զորքերի դեմ։ Սովետական Բանակի մասնակցությունը Ճապոնիայի դեմ ուղղ-

ված պատերազմին, միանգամայն փոխեց ռազմական իրադրությունը։ Ճապոնական իմպերիալիստները խիստ անհանգստացան։ Պատերազմի չափավոր ընթացքը փոխվեց։ Ահ ու տագնապ պատեց ամբողջ Ճապոնիային։ Արդեն օգոստոսի 9-ի ցերեկվա ժամը 1-ին Ճապոնիայի իմպերիալիստական կառավարությունն իր արտակարգ նիստում քննության առավ Սովետական Բանակի սրընթաց գործողությունների դեմ հակամիջոցներ ձեռնարկելու հարցը։ Ճապոնական սամուրայներն իրենք էլ խոստովանում էին, որ այն պահից, երբ մարտի մեջ մտան սովետական զորքերը, դրությունը ռազմաճակատում վատթարագույն ընթացք ստացավ։

Սովետական Բանակի զորամասերը սրընթաց և հուժկու հարվածներ հասցնելով ճապոնացիների ամրացված պաշտպանության գծին, հաղթականորեն առաջ էին շարժվում։ Ամենակարճ ժամանակամիջոցում Սովետական Բանակը ճապոնացիներից ազատագրեց Մանջուրիան, Հարավային Սախալինը, Հյուսիսային Կորեան և Կուրիլյան կղզիները։ Ճապոնացիների Կվանտունյան բանակը կատաղի, բայց ապարդյուն հակագրոհներից հետո, սովետական զորքերի կործանիչ



հարվածների տակ հարկադրված եղավ դադարեցնել դիմադրությունը, ցած դրեց զենքը և գերի հանձնվեց սովետական զորքերին։

Սովետական Բանակի հրետանիների, կատյուշաների և ստալինյան ավիացիայի հարվածների տակ ճապոնական երկու մնացյալ բանակները սովետական ճակատամասում լիովին ջախջախվեցին, ճապոնացիների անխորտակելի համարվող ամրությունները փոշիացան։

Ճապոնիայի դեմ մղվող պատերազմի ելքը վճռվեց Սովետական Բանակի հաղթական հարձակումով, այլ ոչ թե ատոմային ռումբով, ինչպես այդ մասին այն ժամանակ բարձրաձայն աղաղակում էին անգլո-ամերիկյան շրջաններում։ Ատոմային ռումբի գործադրումը փոխեց պատերազմի միայն մեթոդները։ Ճապոնիայի մինիստրների կաբինետն էլ ընդգծել է, որ Սովետական Բանակի պատերազմի մեջ մտնելն էր հենց, որ հասցրեց Ճապոնիայի պարտությունը։ Ճապոնիայի մինիստրների կաբինետի դեկլարացիայի մեջ Ճապոնիայի պարտությունն այսպես է բացատրվում. «Սույն ամսի 9-ին Սովետական Միությունը պատերազմ հայտարարեց Նիպպոնին (Ճապո-

նիայի՝), և մեր երկիրը դեմ առ դեմ կանգնեց իր նմանը չունեցող դժվարին սիտուացիայի առաջ»։ Այսպիսով, Սովետական Միության մտնելը պատերազմի մեջ ընդդեմ Ճապոնիայի և ճապոնական զորքերի զգալի մասսայի ջախջախումը, Ճապոնիային հարկադրեցին կապիտուլյացիայի ենթարկվել։ 1945 թվականի սեպտեմբերի 2-ին ճապոնական միլիտարիստները Տոկիոյում ստորագրեցին անվերապահ կապիտուլյացիայի ակտը։

Ճապոնիայի դեմ տարած հաղթանակի օրը ընկեր Ստալինը հանդես եկավ ռադիոյով և ուրախալի լուր հաղորդեց սովետական ժողովրդին։ «Մեր սովետական ժողովուրդը ուժ և աշխատանք չի խնայել հանուն հաղթանակի,— ասաց ընկեր Ստալինը։— Մենք ապրել ենք ծանր տարիներ։ Բայց այժմ մեզնից յուրաքանչյուրը կարող է ասել՝ մենք հաղթեցինք։ Այժմյանից մենք կարող ենք մեր Հայրենիքը փրկված համարել Արևմուտքում՝ գերմանական արշավանքի և Արևելքում՝ ճապոնական արշավանքի սպառնալիքից։ Հասավ բաղձալի խաղաղությունը ամբողջ աշխարհի ժողովուրդների համար»։

Ճապոնիայի դեմ մղվող մարտերում մաս-



նակցում էին ՍՍՌՄ-ի բոլոր եղբայրական ժողովուրդները, այդ թվում նաև հայ ժողովրդի զավակները։

Հայրենական Մեծ պատերազմում հաղթեց սովետական հասարակական կարգը, հաղթեցին սովետական զինված ուժերը, հաղթեց Լենինի-Ստալինի մեր փառապանծ պարտիայի իմաստուն քաղաքականությունը։ Սովետական Բանակն ազատագրեց Մանջուրիայի, Չինաստանի, Կորեյան կղզիների և Սախալինի միլիոնավոր ժողովուրդներին։ Գլխովին ջախջախելով ճապոնական իմպերիալիստներին, Սովետական Միությունը հուսալիորեն ամրապնդեց ու ապահովեց իր հեռավորարևելյան սահմանների անվտանգությունը։

Սովետական հերոս ժողովուրդը հաղթանակորեն ավարտելով պատերազմը, կոմունիստական պարտիայի ղեկավարությամբ ձեռնամուխ է եղել ժողովրդական տնտեսության վերականգնման ու հետագա զարգացման խաղաղ, ստեղծագործ աշխատանքին։ Սովետական Միության բոլոր ժողովուրդները ակտիվ մասնակցություն ունենալով գերմանական ֆաշիստների ու ճապոնական իմպերիալիստների ջախջախմանը, այժմ համերաշխորեն, ինչպես միասնական

ընտանիքի անդամներ, պայքարում են հետպատերազմյան ստալինյան հնգամյակի հաջող կենսագործման համար։

Փառապանծ լենինգրադցիների կոչով ծավալվել է համաժողովրդական սոցիալիստական մրցությունը հնգամյակը չորս տարում կատարելու համար։ Հետպատերազմյան ստալինյան հնգամյակի երրորդ վճռական տարում սովետական ժողովուրդը աշխատանքային նորանոր հաջողություններ է ձեռք բերում ժողովրդական տնտեսության բոլոր բնագավառներում։ Սովետական Հայաստանի աշխատավորները նույնպես, կատարելով 1947 թվականի պլանը, այժմ հաջողությամբ իրագործում են ընթացիկ տարվա ժողովրդատնտեսական պլանները։

Սովետական ժողովուրդը խորապես գիտակցում է, որ անձնվեր աշխատանքով միայն կարող է ապահովել իր սահմանների ամրությունը, ամրապնդել Հայրենիքի պաշտպանունակությունը։

Իմպերիալիստական Ճապոնիայի դեմ տարած հաղթանակի երրորդ տարում անգլո-ամերիկյան ռեակցիոներները ձգտում են աշխարհը ներքաշել համաշխարհային նոր պատերազմի մեջ, այդ նպատակով դիմելով շանտաժի ու քաղաքական խաբեբայության



ամենաստոր եղանակներին։ Ի պատասխան անգլո-ամերիկյան իմպերիալիստներին և նրանց ռեակցիոն գործողություններին, սովետական ժողովուրդն է՛լ ավելի սերտորեն համախմբվելով բոլշևիկյան պարտիայի ու Սովետական պետության շուրջը, բազմապատկելով զարգացման տեմպերը, նոր ուժով առաջ է ընթանում դեպի կոմունիստական հասարակարգի կառուցումը մեր երկրում։

# ՏԱՐԵԿԱՆ ՊԼԱՆԸ ԿԱՏԱՐԵՆՔ ԺԱՄԿԵՏԻՑ ՇՈՒՏ

### ԿԻՐՈՎԱԿԱՆԻ ԱԼ. ՄՅԱՍՆԻԿՅԱՆԻ ԱՆՎԱՆ ՔԻՄԻԱԿԱՆ ԳՈՐԾԱՐԱՆԻ ԱԳԻՏԱՏՈՐ Ա. ՊՈՂՈՍՅԱՆԻ ԶՐՈՒՅՑԸ ՊԱՐԱՐՏԱՆՅՈՒԹԻ ՑԵԽԻ ԲԱՆՎՈՐՆԵՐԻ ՀԵՏ

*Կիրովականի Ալ. Մյասնիկյանի անվան Քիմիական գործարանը ռեսպուբլիկայի այն առաջավոր ձեռնարկություններից մեկն է, որի կոլեկտիվը կատարելով իր յոթամյա ծրագիրը, պարտավորվել է Հոկտեմբերյան Սոցիալիստական Մեծ Ռևոլյուցիայի տարեդարձին—նոյեմբերի 7-ին կատարել ամբողջ տարվա պլանը։*

*Գործարանի պարտիական կազմակերպությունը մեծ աշխատանք է ծավալել՝ կոլեկտիվի ստանձնած պարտավորությունը ժամանակին ու անթերի կատարելու համար։*

*Ցեխերում, բրիգադաներում եռանդով ու ոգևորությամբ գործում են ագիտատորները։*



*Նրանց զրույցների հիմնական թեման է՝* «Տարեկան պլանը կատարենք նոյեմբերի 7-ին»:

*Վերջերս այդ թեմայի շուրջը պարարտանյութի ցեխում զրույց անցկացրեց գործարանի լավագույն ագիտատոր ընկ.* Աղասի Պողոսյանը:

*Ստորև տպագրում ենք այդ զրույցի համառոտ սղագրությունը։*

***

*Քիչ առաջ վերջացավ աշխատանքը։ Բանվորները իրար ետևից մտան ցեխի վարիչի գրասենյակը։ Այստեղ նրանց սպասում էր ագիտատորը։ Երբ բոլորը հավաքվեցին, ագիտատոր Ա. Պողոսյանը դիմեց ներկաներին.*

*— Կարո՞ղ եմ սկսել.*

*— Կարող եք,—լսվեց բանվորների միահամուռ պատասխանը։*

*— Ընկերնե՛ր,— սկսեց իր զրույցը Ա. Պողոսյանը,— դուք գիտեք, որ մեր մեծ Հայրենիքի աշխատավորները պարտավորվել են Ստալինյան Նոր հնգամյակի ծրագիրը կատարել չորս տարում։ Ինչպես ամեն օր հաղորդում են թերթերն ու ռադիոն, այդ պարտավորությունը կատարվում է ամենու-*

րեք— երկրի բոլոր ծայրերում՝ աննախըն-թաց հաջողությամբ։

Աշխարհավեր պատերազմի հրդեհից հաղ-թանակով դուրս եկած մեր Հայրենիքը ա-րագորեն բուժում է իր վերքերը և օրավուր ավելի գեղեցիկ ու ավելի հզոր է դառնում։

Մեր հաջողությունները անսահման ուրա-խություն են պատճառում նաև կապիտալի դաժան ճանկերի մեջ տառապող միլիոնա-վոր աշխատավոր մարդկանց։ Նրանք իրենց կարոտավառ հայացքները ուղղել են մեզ, որպես մի անմար փարոսի, որը լուսավո-րում է մարդկության առաջընթաց ուղին։

Սակայն քիչ չեն նաև մեր թշնամիները, որոնք զգալով իրենց մահամերձ վիճակը, պատրաստ են հոշոտել մեզ։

**Մ. Գրիգորյան** (*պարարտանյութ ջարդող բանվոր*).— Եթե միայն նրանց ժանիքները կարողանան կտրել։

**Ա. Պողոսյան**.— Այո՛, եթե կարողանան։ Միջազգային ռեակցիան, օրավուր ավելի է գազազում։ Նա ոչ մի բանի առաջ կանգ չի առնում։ Վերհիշենք թեկուզ Իտալիայի և Ճա-պոնիայի կոմունիստական պարտիաների ղեկավարների դեմ կատարված ստոր մա-հափորձերը։

Ընկերնե՛ր, եթե ուզում եք, որ արագ



բուժվեն պատերազմի վերքերը, մեր Հայրե-նիքը է՛լ ավելի հզոր դառնա, պարտավոր եք ավելի լավ աշխատել, կատարել և գերա-կատարել արտադրական առաջադրանքները։

Մեր գործարանը քայլում է առաջավորների շարքերում։ Մենք յոթամսյա պլանը կատա-րել ենք 108 տոկոսով։ Մենք հպարտանում ենք ձեր ցեխով, որը ամենաառաջավորներից մեկն է գործարանում։ Բավական է ասել, որ դուք յոթամսյա ծրագիրը կատարել եք 183,5 տոկոսով։

Ես մտածում եմ թվել ցեխի առաջավորնե-րի անունները, բայց դժվարանում եմ, որով-հետև այս ցեխում ետ մնացողներ չկան, և ճիշտ կվարվեի, եթե առաջավորների շար-քում թվեի բոլորից անունները։

**Մ. Հովհաննիսյան** (*ցեխի վարպետ*).— Թող հաջողությունը մեզ չգոռոզացնի։

**Ա. Պողոսյան**.— Այո՛, ընկ. Հովհաննիս-յանի դիտողությունը միանգամայն իրավա-ցի է։ Սովետական մարդիկ գոռոզանալու իրավունք չունեն, որքան էլ մեծ լինեն մեր հաջողությունները։ Ինչքա՞ն աշխատանք կա դեռ կատարելու։ Այժմ մենք պետք է մտա-ծենք գործն ավելի լավ կազմակերպելու մասին։ Ի՞նչ միջոցներ են հարկավոր ձեռք բերած հաջողություններն ամրապնդելու և

հաստատորեն առաջ ընթանալու համար։

Ա. Թամարյան (փականագործ բանվոր).— Դրա համար շատ բան պետք չէ. հարկավոր է, որ մեզանից ամեն մեկը չմոռանա իր պարտքը Հայրենիքի առաջ, մտածի որ իր ամեն մի հաջողությունը աշխատանքում մի քայլ է առաջ՝ մեր երկիրը է՛լ ավելի ուժեղ, է՛լ ավելի հարուստ դարձնելու ճանապարհին։

Այդ գիտակցությունն է մեզ, փականագործներիս, առաջնորդում մեր ամենօրյա աշխատանքում։ Մենք անում ենք ամեն ինչ, որ ցեխն աշխատի անխափան, առանց վթարի։ Դրա համար, դեռ աշխատանքն սկսվելուց առաջ ստուգում ենք մեքենաները, ժամանակին վերացնում խափանումները։

Մ. Հովհաննիսյան.— Իսկ թերություններ չկա՞ն ձեր մոտ։

Մ. Գրիգորյան (պարարտանյութ ջարդող բանվոր).— Այդ մասին ես եմ ուզում խոսել։

Դուք գիտեք՝ ես առաջին տարին չէ, որ աշխատում եմ այս գործարանում։ Ահա արդեն լրանում է այստեղ աշխատելուս քսանամյակը։ Այդ ինձ իրավունք է տալիս շատ բան ասել, բայց ես, այս անգամ, կբավարարվեմ մի երկու դիտողություններով։

Դուք ասում եք, թե մեր ցեխը առաջավոր



է, բոլոր բանվորները լավ են աշխատում, կատարում և գերակատարում են իրենց առաջադրանքները։ Դրան ես չեմ առարկում. դա միանգամայն ճիշտ է։ Բայց այդ չի նշանակում, թե մենք թերություններ չունենք։

Վերցնենք թեկուզ արտաքինից հասարակ թվացող մի հարց— ցեխի մաքրության հարցը։ Միշտ չէ, որ մենք հոգ ենք տանում մեր մեքենաների մաքրության մասին։ Հեռու չգնանք, հենց այսօր էլ ցեխը կեղտոտ էր, մեքենաները փոշու մեջ կորած։ Ո՞վ է սրա համար մեղավոր, իհարկե մենք, ուրիշ ոչ ոք։

Կամ մի ուրիշ հարց, որը կապված է աշխատանքի կարգապահության հետ։ Խոսքս վերաբերում է կուլտուրայի տարրական հարցերին, որոնք պահանջվում են ամեն մեկից, առավել ևս առաջավոր բանվորներից։ Օրինակ, մեր ցեխում կա մի երիտասարդ բանվոր, որի անունն է Կարլեն, ազգանունը՝ Ղազարյան։ Դուք նրան լավ եք ճանաչում։

Ա. Պողոսյան (ցեխի վարիչ).— Ղազարյանը լավ, եռանդուն աշխատող է։

Մ. Գրիգորյան.— Այո՛, ընկ. Պողոսյան, ես նրա եռանդի մասին ոչինչ չունեմ ասելու, բայց լավ աշխատողը նա չէ ով միայն կատարում է իր պլանը։ Մեր լավ, առաջավոր

բանվորը իր առաջադրանքը կատարելուց բացի մտածում է նաև իր վարքի մասին, ձգտում է օրինակելի լինել ամեն ինչում։ Բայց Ղազարյանը չի հարգում ավագներին, աշխատանքի ժամանակ զբաղվում է շատախոսությամբ և ընկերների դիտողությունները հաշվի չի առնում։

Շատ ավելի առաջավոր կլիներ նա, եթե այդ թերությունները վերացներ։

***

Այս ցեխում ահա տասներորդ ամիսն է, ինչ աշխատում են մի շարք հայրենադարձ հայեր։ Նրանք նույնպես մեծ ուշադրությամբ լսում են ագիտատորին, աշխուժորեն մասնակցում զրույցին։

Ա. Զաքարյան (բեռնող բանվոր, հայրենադարձ).— Միանգամայն ճիշտ էր ընկ. Մուրադ Գրիգորյանի դիտողությունը ցեխը կեղտոտ պահելու մասին։ Դա անշուշտ մի արգելակ է աշխատանքը է՛լ ավելի լավ կազմակերպելու ճանապարհին։ Իհարկե, դժվար չէ այդ արգելակը վերացնելը մի այնպիսի կոլեկտիվում, ինչպիսին մերն է։ Այս հրաշալի մարդկանց օգնությամբ ես ինքս քիչ արգելքներ չեմ վերացրել, մինչև կանգնել եմ նրանց շարքում, դարձել նրանց պես առաջավոր։



Ես եկել եմ Եգիպտոսից։ Այնտեղ կոշկակար էի։ Իմ միակ երազանքն էր վերադառնալ Հայրենիք, ճաշակել նրա քաղցրությունը։ Եվ ահա տաս ամիս է, ինչ ես այստեղ եմ։ Ինձ համար պարզ է, որ չի կարելի լինել Հայրենիքի հավատարիմ զավակ, առանց նրա բարօրության համար պայքարելու։ Եվ ես չեմ խնայում իմ ուժերը իմ ժողովրդին, իմ Հայրենիքին ծառայելու համար։ Ես կատարում եմ ինձ տրվող արտադրական առաջադրանքները, մասնակցում եմ հասարակական կյանքին և անսահմանորեն հպարտանում այն բանով, որ ես էլ սովետական ազատ երկրի քաղաքացի եմ և նույնիսկ առաջավորների շարքերում եմ գտնվում։

Զրույցին մասնակցում է նաև հայրենադարձ Հովհաննես Նալբանդյանը։ Նա էլ եկել է Եգիպտոսից և ահա 10-րդ ամիսն է, որ աշխատում է այս գործարանում։

Այս տաս ամիսների ընթացքում նա այնպես է փոխվել, որ անճանաչելի է դարձել։ Եգիպտոսում նա զբաղվում էր պատահած ամեն ինչով, մի կտոր հացի համար հաճախ փոխելով մասնագիտությունը։ Երբ նա առաջին անգամ ցեխ մտավ, գործին անծանոթ էր, չգիտեր ինչ անել և վախենում էր, որ ինքը անպետք կլինի այստեղ։ Սակայն շու-

տով սովետական գիտակից ու հոգատար մարդկանց ջերմ շրջապատում նա արագորեն փոխվեց, դարձավ իր գործի իսկական վարպետը։ Այժմ, բանվորներից մեկի արտահայտությամբ ասած՝ ինքն աշխատանքից է գոհ, աշխատանքն՝ իրենից։

Ահա ձայն է վերցնում նա.

**Հ. Նալբանդյան.**—Չեմ թաքցնում, ինձ համար դժվար էր սկզբում, ես կարծում էի, թե գործերս հաջող չեն դասավորվի, ես մենակ կմնամ և ոչ ոք ինձ չի օգնի, կլքեն մարդիկ ինձ։ Սակայն շուտով համոզվեցի, որ մի այնպիսի երկրում, ինչպիսին է սովետական երկիրը, այնպիսի մարդկանց շրջապատում, ինչպիսիք են սովետական մարդիկ, մարդը, աշխատանք սիրող մարդը չի կարող մենակ, անօգնական ու լքված լինել։

Ես կարճ ժամանակում դարձա ձեր կոլեկտիվի հավասարազոր անդամը։ Ես էլ եմ հպարտանում առաջավոր ցեխով, իմ առաջավոր ընկերներով։

**Մ. Հովհաննիսյան** (ցեխի վարպետ, պարտկազմակերպիչ).— Մեր կոլեկտիվը գերակատարել է յոթամսյա պլանը։ Մենք որոշել ենք նոյեմբերի 7-ին կատարել տարվա պլանը։ Ես հարցնում եմ ձեզ, ընկերներ, իսկ ավելի շուտ չե՞նք կարող կատարել այն։



— Կարող ենք,— պատասխանում են ունկնդիրները։ Ապա ձայն է վերցնում կարբիդ աղացող բանվոր Հ. Խաչատրյանը։

**Հ. Խաչատրյան.**—Ես կարծում եմ, որ ընկ. Հովհաննիսյանի հարցին մենք կարող ենք ավելի որոշակի պատասխան տալ։ Դա պատահական հարցադրում չի։ Ես ևս այդ մասին մտածել եմ։ Բավական չէ ասել, թե կարող ենք կատարել, այլ պիտի նշել թե ե՞րբ, ո՞ր ամսին, ո՞ր օրը։

Մենք, ինչպես արդեն հայտնի է, գերակատարել ենք մեր յոթամսյա պլանը։ Իմ հաշիվներով մենք բոլոր հնարավորությունները ունենք տարեկան առաջադրանքը կատարել նոյեմբերի 7-ից առաջ։

Ես առաջարկում եմ պարտավորություն վերցնել տարեկան պլանը կատարել Սովետական Տանկիստի օրը—սեպտեմբերի 12-ին։

**Բոլորը.**—Ճիշտ է, չենք առարկում։ Կկատարենք Տանկիստի օրը—սեպտեմբերի 12-ին։

**Ալ. Պողոսյան** (ցեխի վարիչ).— Ես ևս չեմ առարկում, բայց մի լրացուցիչ առաջարկ եմ ուզում անել։ Իմ կարծիքով սխալ չէր լինի որոշել այսպես. տարեկան պլանը կատարել Տանկիստի օրը— սեպտեմբերի 12-ին, իսկ Հոկտեմբերյան Սոցիալիստական Մեծ ռևո-

լուցիայի օրը— նոյեմբերի 7-ին տալ պլանից դուրս 20 տոկոս արտադրանք, այսինքն տարեկան պլանը կատարել 120 տոկոսով։

Բոլորը.—Ձենք առարկում։ Համաձայն ենք։

Հ. Խաչատրյան.—Իսկ ես խոստանում եմ առաջադրանքը կատարել 130 տոկոսով։

Ձայներ տեղից.— Քեզանից ետ չենք մնա։

***

Վերջում ագիտատոր Աղասի Պողոսյանը ամփոփեց զրույցի արդյունքները։ Նա ասաց.

— Ընկերներ, մեր զրույցը, իմ կարծիքով վատ չընթացավ։ Դուք այստեղ պարտավորվեցիք և կոնկրետ ժամկետներ սահմանեցիք տարեկան պլանի կատարման ուղղությամբ Այդ շատ լավ է։ Ինձ մնում է սրտանց հաջողություն ցանկանալ ձեզ, ձեր հետագա աշխատանքում։

Ինչ վերաբերում է այն մի քանի դիտողություններին, որ արվեցին այստեղ, ես այդ մասին կհաղորդեմ գործարանի ղեկավարությանը։

Ձեր որոշման մասին ես կպատմեմ գործարանի մյուս ցեխերի բանվորներին։

---

## ԻՌԻԳԱՑԻՈՆ ՇԻՆԱՐԱՐՈՒԹՅՈՒՆԸ ՀԱՅԿԱԿԱՆ ՍՍՌ-ՈՒՄ 1948 ԹՎԻՆ

Հայաստանի կլիմայական պայմանները, նրա շրջանների որոշ մասի համար, առանց արհեստական ոռոգման, հողագործությունը դարձրել են սակավ շահութաբեր։ Դրա համար էլ մեզ մոտ գյուղատնտեսության զարգացումը մեծապես կախված է ռեսպուբլիկայի բնական հարստությունների, տվյալ դեպքում մեր ջրային ռեսուրսների օգտագործման աստիճանից։

Վ. Ի. Լենինը Ադրբեջանի, Վրաստանի, Հայաստանի, Դաղստանի և Լեռնականների ռեսպուբլիկայի կոմունիստներին 1921 թվականին գրած նամակում պահանջում էր.

«Անմիջապես աշխատել բարելավելու գյուղացիների դրությունը և սկսել էլեկտրիֆիկացման ու ոռոգման խոշոր աշխատանքներ»:

Հայաստանի բոլշևիկները, հետևելով մեծ Լենինի պատգամներին, սովետական իշխա-

նության առաջին իսկ տարիներից ամեն կերպ զարգացնում են ոռոգման գործը, ամեն տարի ընդլայնելով ոռոգվող հողերի տարածությունը։

Մեր ռեսպուբլիկայում իրրիգացիոն ջրանցքներ կառուցելու գործում շրջադարձային կետ հանդիսացավ ՍՍՌ Միության Ժողկոմսովետի և ՀամԿ(բ)Պ Կենտկոմի 1940 թվի սեպտեմբերի 6-ի հատուկ որոշումը «Հայկական ՍՍՌ-ում պտղաբուծությունն ու խաղողագործությունը և տեխնիկական կուլտուրաները զարգացնելու ձեռնարկումների մասին»։

Սակայն Սովետական Միության դեմ գերմանա-ֆաշիստական զավթիչների նյութած պատերազմը խանգարեց այդ վիթխարի պլանի իրագործմանը և ժամանակավորապես դադարեցրեց սոցիալիստական գյուղատնտեսության զարգացումը։

Գյուղատնտեսության, ինչպես նաև իրրիգացիայի հետագա զարգացումը պարզորոշ արտացոլումն գտավ Ստալինյան նոր հնգամյակի օրենքում. ժամանակավորապես ընդհատված իրրիգացիոն խոշոր շինարարությունը նոր ու լայն թափ ստացավ։

Այդ պլանի համաձայն վերսկսվեցին կոնսերվացված օբեկտների աշխատանքները,



այդ թվում Ստորին Հրազդանի,Նորքի, Գառնիի և այլ ջրանցքների շինարարությունը։ Բացի դրանից, սկսվեցին նոր շինարարություններ, ինչպես, օրինակ՝ Արազդայանի տափաստանի հողերի չորացման, Կոտայքի ջրհանկայանի, Արփա լճի ջրամբարի շինարարության աշխատանքները և այլն։

ՀամԿ(բ)Պ Կենտկոմի Փետրվարյան պլենումը ջրային տնտեսության օրգանների առաջ դրեց իրրիգացիոն շինարարության և գոյություն ունեցող ոռոգման սիստեմների շահագործման աշխատանքները արմատապես բարելավելու խնդիրը, հատուկ ուշադրություն դարձնելով գյուղատնտեսական օգտագործումից դուրս եկած ճահճակալած հողերի յուրացմանը, ինչպես նաև իրրիգացիոն աշխատանքների լայն մեքենայացմանը։

Հայ ժողովրդի նկատմամբ ստալինյան հոգատարության վառ արտահայտությունը հանդիսացավ ՍՍՌ Միության Մինիստրների Սովետի 1947 թվի դեկտեմբերի 10-ի հատուկ որոշումը՝ «Հայկական ՍՍՌ-ում ոռոգման աշխատանքներն արագացնելու մասին»։

Այդ որոշմամբ իրրիգացիոն շինարարության պլանի մեջ մտցվեցին.

Թալինի 12 հազար հեկտար տարածու-

թյամբ հողերի ոռոգման առաջին հերթի աշխատանքները, ճահճակալած հողերի չորացումը և ոռոգումը Արարատյան դաշտավայրում՝ 18 հազար հեկտար տարածությամբ։

Այս աշխատանքներն արդեն սկսված են ընթացիկ տարում։ Բացի դրանից, նույն որոշմանը համապատասխան, Հայկական ՍՍՌ Ջրային տնտեսության մինիստրությունը ձեռնամուխ է եղել Արզնու-Շամիրամի 30 հազար հեկտար տարածությամբ հողերի ոռոգման և գյուղատնտեսական յուրացման նախագիծը կազմելու աշխատանքին, այն հաշվով, որ 1949 թվից սկսվի շինարարությունը։

Հայաստանի Կ(բ)Պ Կենտկոմի 31-րդ պլենումը նշեց 1948 թվի իրրիգացիոն աշխատանքների պլանը և մշակեց այդ պլանն իրագործելու միջոցառումները։

Նոր հնգամյակի այս երրորդ վճռական տարում մեզ մոտ եռանդուն գործ է կատարվում իրրիգացիոն աշխատանքների ծրագիրն իրականացնելու ուղղությամբ։

Հետպատերազմյան ստալինյան հնգամյակի առաջնեկը՝ Ստորին Հրազդանի ջրանցքն այս տարվա ոռոգման սեզոնի սկզբից ջուր է տալիս մինչև 18 կիլոմետրի վրա։ Այդ ջրանցքի տակ ընկնող հողերում արդեն կա-



ռուցվում են հայրենիք վերադարձած հայերի գեղեցիկ ավաններ, կանաչում են դաշտերը, տնկված են առաջին տասնյակ հեկտար խաղողի այգիները։

Աշտարակի, Էջմիածնի, Ապարանի և Բերիայի շրջանների կոլխոզնիկներն ու կոլխոզնիկուհիները սոցիալիստական մրցության դրոշը պատվով առաջ են տանում։ Նրանք վեց ամսում կատարել են տարեկան պլանը։ Իսկ Թալինի և Աղինի շրջանների կոլխոզնիկները համառ կռվով ջրի համար ճանապարհ են հարթում առաջին հերթին 12 հազար հեկտար հողերը ոռոգելու նպատակով։

Թալինի հողերին ոռոգման ջուր, ինչպես նաև Շիրակի ջրանցքին դոտացիա ապահովելու համար Ամասիայի, Ղուկասյանի և Ախուրյանի շրջանների կոլխոզնիկները դեռևս անցյալ տարվանից ձեռնամուխ են եղել և այժմ շարունակում են մեծ ջրամբարի շինարարությունը, որը հիմնականում պետք է ավարտվի ընթացիկ տարվա վերջում։

Ժողովրդա-տնտեսական կարևորություն է ստանում Արարատյան դաշտավայրի այժմ չօգտագործվող հողերի մելիորացիան։ Այդ խիստ խոնավ, տեղ-տեղ աղակալած հողերը գտնվում են Հոկտեմբերյանի, Էջմիածնի

շրջաններում՝ Սև ջուր գետի հովտում, Զանգիբասարի և Արտաշատի շրջաններում։ Այդ հողերի վրա անց է կացվում չորացնող-կոլեկտորային նոր ցանց և վերականգնվում են գոյություն ունեցողները։

Զանգիբասարի շրջանում Աղհամզալու և Թազագյուղ գյուղերի հողերի վրա էքսկավատորներն արդեն մի քանի խոր ջրահավաք ջրանցք են անցկացրել, որոնք ջուրը տանում են դեպի Հրազդան գետը։

Անցկացված ջրահավաք ջրանցքների չորացնող ազդեցությունն այնքան ակներև է, որ եկող տարվանից այդ հողերը կարող են վերադարձվել գյուղատնտեսությանը։ Իսկ Բուրաստան, Չիգդամլու և Դալլար գյուղերի հողօգտագործման սահմաններում գտնվող հողերը չորացված են ու հանձնված այդ գյուղերի կոլխոզներին՝ գյուղատնտեսական շրջանառության մեջ մտցնելու համար։

Այս տարի գործարկվող օբեկտներից մեկը Կոտայքի ջրհանկայանն է, որը մոտիկ ամիսներում, մեքենաների էլեկտրական մասերի մոնտաժից հետո, շահագործման կհանձնվի։

Կոտայքի ջրհանկայանը ոռոգելու է Առինջ, Քանաքեռ, Ավան և այլ գյուղերի հողերը։ Կայանի ոռոգելիք հողերի հիման վրա «Արա-



րատ» տրեստը կազմակերպել է խաղողաբուծական սովխոզ։

Ռեսպուբլիկայի սոցիալիստական գյուղատնտեսության համար նոր հողերի յուրացման և ջրովի կուլտուրաների ցանքատարածության ընդարձակման գծով առաջադրված խնդիրների իրագործումը դարձել է ամբողջ կոլխոզային գյուղացիության գործը։

Իրրիգացիոն ջրանցքներ կառուցող կոլխոզնիկներն ու կոլխոզնիկուհիները և նրանց հետ միասին ջրային տնտեսության աշխատողները երկրաբանական դժվարին պայմաններում լարված աշխատանքով ոռոգման ջրանցքներ են անցկացնում, որոնք կենսատու ջուր են տալիս կոլխոզային դաշտերին։

Պաշտպանելով ռեսպուբլիկայի կոլխոզների նախաձեռնությունը և ոռոգման փոքր ջրանցքներ կառուցելու գործում ընդառաջելով նրանց, Հայաստանի կառավարությունը հավանություն տվեց և հատուկ որոշում կայացրեց, որի համաձայն այդ կոլխոզներին պահանջված քանակով ցեմենտ է բաց թողնվում անհրաժեշտ հիդրո-տեխնիկական կառուցումների համար։ Կոլխոզային իրրիգացիոն կառուցվածքների տեխնիկական հսկողությունը դրված է Ջրային տնտեսության մինիստրության օրգանների վրա։ Ոռոգման

*փոքր ջրանցքներով, որոնք այս տարի կառուցվելու են կոլխոզների ուժերով ու միջոցներով, ոռոգվելու է 1400 հեկտար տարածություն։*

*Փոքր, բայց հաճախ ավելի էֆեկտիվ իրրիգացիոն օբեկտներում նորից երևան է գալիս մեր ռեսպուբլիկայի ռելիեֆի՝ լեռների, կիրճերի, ձորերի ազդեցությունը։ Դրա համար էլ այդպիսի դեպքում կամ պետք է ջուրը հանել մեծ բարձրության վրա, այսինքն դիմել մեխանիկական ոռոգման, իսկ երբ ջուրը ոռոգման համար պակասում է կամ թե շատ քիչ է աղբյուրում, հարկ է լինում դիմել ոչ վեգետացիոն շրջանում անօգուտ հոսող ջրերի կուտակմանը՝ արհեստականորեն կառուցված փոքրիկ ջրամբարներում։ Այսպիսով ջրհան կայաններ են կառուցում Մալաթիան (Բերիայի շրջան), Սանահինը, Հաղպատը, Ճոճկանը (Ալավերդու շրջան) և այլ շատ գյուղերի կոլխոզներ մեր ռեսպուբլիկայի զանազան շրջաններում։*

*Ընթացիկ տարում ավարտվում են մի քանի ոռոգման փոքր ջրանցքներ, ինչպես օրինակ՝ Ջինարիի ջրանցքը Շամշադինի շրջանում՝ 180 հեկտար հող ոռոգելու համար, Երանոսի ջրանցքը՝ Մարտունու շրջանում, որն արդեն մասամբ ջուր է տալիս*



*Ծակքար, Երանոս, Ադամխան և Զորագյուղ գյուղերի հողերին։*

*Նոր Բայազետի շրջանում Նորադուզ և Սարուխան գյուղերի կոլխոզնիկներն արդեն ավարտել են ոռոգիչ և չորացնող ջրանցքների շինարարությունը։*

*1949 թվի իրրիգացիոն աշխատանքների պլանը ծրագրվում է զգալիորեն ավելի մեծ կապիտալ ներդրումով, քան նախատեսված է եղել այս տարվա համար։ Այդ պատճառով էլ Հայկական ՍՍՌ Ջրային տնտեսության մինիստրությունը ձեռնամուխ է եղել նյութատեխնիկական բազայի նախապատրաստմանը՝ եկող տարվա աշխատանքների համար։*

*Ջրովի հողագործության հետ կապված գյուղատնտեսական արտադրության մի շարք ճյուղերի զարգացումը հրամայաբար նորանոր պահանջներ է առաջադրում Հայաստանի իրրիգացիոն աշխատանքների ծավալմանը։ Ահա հենց այդ պահանջների լիակատար իրականացմամբ կհասնենք մեր ռեսպուբլիկայի գյուղատնտեսության այնպիսի զարգացման, որպիսին անհրաժեշտ է Ստալինյան նոր հնգամյակը չորս տարում կենսագործելու համար։*

Ս. ԹԱՐՎԵՐԴՅԱՆ
(Ինժեներ-մելիորատոր)

# ՍՈՑԻԱԼԻՍՏԱԿԱՆ ԱՇԽԱՏԱՆՔԻ ՀԵՐՈՍՆԵՐԸ ՇԱՀՈՒՄՅԱՆԻ ԱՆՎԱՆ ԿՈԼԽՈԶՈՒՄ

Ներքին Ախտան ավերում է բերքահավաքի եռուն առօրյան։ Գյուղի հյուսիս-արևմտյան ծայրամասում՝ սարահարթի վրա, կոլխոզային կալում անընդհատ կալսվում է լայնածավալ դաշտերի առատ բերքը։

Շահումյանի անվան կոլխոզի անդամները, աշխատելով Սոցիալիստական Աշխատանքի Հերոսներ՝ օղակավարներ Սարգիս Հովհաննիսյանի և Սարիբեկ Հունանյանի օրինակով, նոր եռանդով ձեռնամուխ են եղել կարճ ժամկետում և անկորուստ հավաքելու բերքը։

Կոլխոզնիկների աշխատանքային սխրագործությունների հիմքում դրված է ՀամԿ(բ)Կ Կենտկոմի Փետրվարյան պլենումի որոշման կենսագործումը։ Նրանք խորապես գիտակցում են, որ իրենց անձնուրաց աշխատանքով մեծագույն ավանդ են ներդնում մեր երկրում հացի և պարենամթերքի առատության բա-



տեղծելու համար մղվող համաժողովրդական պայքարում։

Դեռևս անցած տարվա աշնանը, երբ սկսվում էր պայքարը նոր բերքի համար, Սոցիալիստական Աշխատանքի Հերոսների գլխավորած երկու օղակները ցանեցին ցորենի կարմիր սֆահատ տեսակը, որը շատ ավելի բերքատու է ցորենի տեղական տեսակներից։

Նախանցյալ տարվա 8 հեկտար տարածության փոխարեն, անցած տարի 20-ական հեկտար էր ամրացված երկու օղակներին։ Ամրացված հողամասերը նրանք մշակեցին ագրոտեխնիկայի պահանջներին համապատասխան։

Երկու օղակներն էլ ամեն մի հողակտորի հանդեպ առանձին մոտեցում ունեն, որովհետև հողերը տարբեր հատկություններ ունենալով մշակվում են տարբեր ձևով։ Այսպես, այն հողակտորները, որոնց ներքին շերտը խիճ է և չնկ ավազահող՝ հերկեցին 20—22 սանտիմետր խորությամբ, իսկ սևահողերը 25—30 սանտիմետր։

Նրանք սերմացուն զտեցին, այն հասցրին պետական կոնդիցիայի։

Յուրաքանչյուր հեկտարի վրա շարքացանով ցանվեց 200 կիլոգրամ սերմացու, որից

հետո ամբողջ տարածությունը զիգ-զագով փոցխվեց և հնարավորություն ստեղծվեց հացաբույսերի նորմալ աճման համար։

Որպես պարարտանյութ, երկու օղակներն էլ օգտագործում են գոմաղբը, մոխիրը, անասունների մզվածքը և այլն։ Այս պարարտանյութերը նախօրոք փտեցվում են և ապա փոխադրվում դաշտ, յուրաքանչյուր հեկտարին 25—30 տոննա հաշվով։

Կոլխոզային դաշտերի հերոսները աշնանացանի փոցխումը կատարեցին վաղ գարնանը, երբ հնարավոր եղավ մտնել դաշտ։ Ձյան տակ կեղևակալած հողը փխրեցնելու համար նրանք օգտագործեցին ձիու փոցխը, իսկ պարարտանյութը շաղ տալուց հետո բույսերի լրացուցիչ սնուցման նպատակով կատարվեց փոցխում ձեռքի փոցխերի միջոցով։

Ուշի-ուշով հետևելով ցանքերի աճմանը, նրանք ժամանակին և արդյունավետ կերպով պայքարեցին նաև կրծողների ու վնասատուների դեմ։ Երկու օղակներն էլ իրենց դաշտերը վաղ գարնանը վարակեցին մկնդեղով, պայքարեցին եղած մկների դեմ և կանխեցին նրանց հետագա զարգացումը։

«Ոչ մի մոլախոտ մեր արտերում» լոզունգով երկու օղակներն էլ սկսեցին պայքարը



մոլախոտերի դեմ։ Մոլախոտերով վարակված դաշտերը պատճառ են դառնում հացաբույսերի նվազ լինելուն, քանի որ հողից տանում են մեծ քանակությամբ սննդանյութեր և խոնավություն. փուշն ու տատասկը ոչ միայն հողից ծծում են հացաբույսերի համար անհրաժեշտ սնունդն ու ջուրը, այլև բերքահավաքի շրջանում խառնվելով հացահատիկի հետ, գցում են բերքի որակը։

Ահա թե ինչու Սոցիալիստական Աշխատանքի Հերոսների նախաձեռնությամբ, երկու օղակներն էլ որոշ հողակտորներում կատարեցին նույնիսկ 3 քաղհան։

Այսպիսի օրինակելի աշխատանքով նրանք դրեցին բարձր բերքի հիմքերը և երբ բերքահավաքի վճռական օրերը հասան, երկու օղակներն էլ դիմավորեցին նրան լրիվ պատրաստված. քաշող ուժով, գյուղատնտեսական ինվենտարով ու աշխատող ձեռքերով։ Օղակներն իրենց աշխատանքի հիմքում դրեցին անհատական և մանր խմբակային գործավարձի սկզբունքը։ Դրա շնորհիվ հնձվորը օրական 0,75 հեկտարի փոխարեն կատարում է ավելի քան մեկ հեկտար հունձ։ Ամբողջ աշխատանքը կոնվեյերային սիստեմով է առաջ գնում. հնձելը, խուրձ կապելը, դիզելը և կալսելը միմյանց հետ շաղկապված են։

Այսպիսի միջոցառումների կիրառման շնորհիվ «Շահումյան»-ի կոլխոզնիկներն այս տարի աճեցրին հարուստ բերք։ Յուրաքանչյուր հեկտարից նրանք հավաքում են ավելի քան 150 փութ հացահատիկ։

Ներքին Ախտայի կոլխոզնիկների աշխատանքային սխրագործությունները ոգեշնչում և կազմակերպում է կոլխոզի պարտիական կազմակերպությունը։ Աշխատանքի բարձր արտադրողականությունը և բերքահավաքի գրաֆիկի անխախտ պահպանումը ամենից առաջ սոցիալիստական մրցության արդյունքն են։ Պարտիական կազմակերպությունը մրցության մեջ է ներգրավել բերքահավաքի բոլոր մասնակիցներին։ Ագիտատորները շնորհալի աշխատանք են կատարում կոլխոզնիկների մեջ, նրանք պարզ ու մատչելի լեզվով կոլխոզնիկներին պատմում են օրվա նորությունների, մեր մեծ Հայրենիքում ձեռք բերված աննախընթաց նվաճումների մասին։

Կոլխոզնիկների մեջ կատարվող ամենօրյա քաղաքական-մասսայական աշխատանքի շնորհիվ կոլխոզում ստեղծվել է բարձր կարգապահություն։ Բերքահավաքի են դուրս գալիս ամենքը. նրանք դեռ լույսը չբացված լի-



նում են դաշտերում, կարճ է տևում նրանց հանգիստը։

Նրանք ամեն ինչից բարձր են դասում հարազատ պետության շահերը։ Բերքահավաքի հենց առաջին օրերից կոլխոզի վարչությունը, պարտիական կազմակերպությունը, բոլոր կոլխոզնիկներն ու կոլխոզնիկուհիները հոգ էին տանում, որպեսզի պետությանը հացահատիկ հանձնելու պարտավորությունը կատարվի ամենաարագ կերպով։ Իրենց այդ ցանկությունը նրանք կատարեցին ու շրջանում առաջիններից մեկը և ժամկետից շուտ Ներքին Ախտայի կոլխոզը կատարեց հացամթերումների տարեկան պլանը։

Ն. Ախտայի կոլխոզնիկների աշխատանքի փորձը խիստ արժեքավոր է և այն լայնորեն պետք է օգտագործեն մեր ռեսպուբլիկայի կոլխոզային հողագործները։ Այդ փորձի մեջ ամենից արժեքավորն այն է, որ մարդիկ մանրակրկիտ ուսումնասիրել են իրենց հողերը, գիտեն յուրաքանչյուր հողակտորի հատկությունը և դրանից ելնելով նրա վրա գործադրում են համապատասխան ագրոտեխնիկա։ Հենց այդ էլ ապահովում է բարձր բերքի ստացումը։

Հ. ՂԱԶԱՐՈՍՅԱՆ

# ԱՇԽԱՏԱՎՈՐՆԵՐԻ ՄԵՋ ԿԱԶՄԱԿԵՐՊՎՈՂ ԶՐՈՒՅՑՆԵՐԻ ԹԵՄԱՆԵՐ, ՊԼԱՆՆԵՐ ԵՎ ԳՐԱԿԱՆՈՒԹՅՈՒՆ

*Թ Ե Մ Ա*

ՍՍՌՄ ԺՈՂՈՎՐԴԱԿԱՆ ՏՆՏԵՍՈՒԹՅԱՆ ՎԵՐԱԿԱՆԳՆՄԱՆ ՈՒ ԶԱՐԳԱՑՄԱՆ ԵՎ ՀԱՅԿԱԿԱՆ ՍՍՌ ԺՈՂՈՎՐԴԱԿԱՆ ՏՆՏԵՍՈՒԹՅԱՆ ԶԱՐԳԱՑՄԱՆ ՊԵՏԱԿԱՆ ՊԼԱՆԻ 1948 ԹՎԱԿԱՆԻ 2-ՐԴ ԵՌԱՄՍՅԱԿԻ ԿԱՏԱՐՄԱՆ ԱՐԴՅՈՒՆՔՆԵՐԸ ԵՎ 3-ՐԴ ԵՌԱՄՍՅԱԿԻ ԽՆԴԻՐՆԵՐԸ։

*Պ Լ Ա Ն*

*1. ՍՍՌՄ ժողովրդական տնտեսության վերականգնման ու զարգացման և Հայկական ՍՍՌ ժողովրդական տնտեսության զարգացման պետական պլանի 1948 թվականի 2-րդ եռամսյակի հաջող կատարումը սովետական կարգերի ուժի և կենսունակության ցայտուն վկայությունն է։*

*2. ՍՍՌՄ-ում և Հայկական ՍՍՌ-ում արդյունաբերության մեջ արտադրական պլան-*



*ների կատարումը և արդյունաբերական արտադրանքի աճը 1948 թվականի 2-րդ եռամսյակում։*

*3. ՍՍՌՄ-ում և Հայկական ՍՍՌ-ում գարնան-գյուղատնտեսական աշխատանքների և բերքահավաքի անցկացման ավելի բարձր մակարդակը անցյալ տարվա համեմատությամբ։*

*4. Ապրանքաշրջանառության ծավալումը և ռեալ աշխատավարձի բարձրացումը 1948 թվականի 2-րդ եռամսյակում։*

*5. Արտադրական տեմպերի աճը, պլանների կատարումը ըստ արտադրանքի տեսակների, արտադրական պրոցեսների մեքենայացումը, աշխատանքի արտադրողականության հետագա բարձրացումը, խիստ խնայողությունը և արտադրանքի որակի բարձրացումը— 1948 թվականի երրորդ եռամսյակի հիմնական խնդիրներն են։*

*6. 1948 թվականի 2-րդ եռամսյակի պլանների կատարումը մեր արտադրության մեջ և մեր կոլեկտիվի խնդիրները 1948 թվականի 3-րդ եռամսյակի պլանները կատարելու համար։*

*7. Սոցիալիստական մրցության հետագա ծավալումը, պայքարը բոլոր ցեխերը և բրիգադները առաջավոր դարձնելու հա-*

մար— 1948 թվականի երրորդ եռամսյակի պլանների հաջող կատարման երաշխիքն են։

ԳՐԱԿԱՆՈՒԹՅՈՒՆ

1. ՍՍՌՄ Պետպլանի հաղորդագրությունը ՍՍՌՄ ժողովրդական տնտեսության վերականգնման և զարգացման 1948 թվականի պետական պլանի 2-րդ եռամսյակի կատարման արդյունքների մասին («Սովետական Հայաստան», 20 հուլիսի 1948 թ.)։

2. Հաղորդագրություն ՍՍՌՄ Պետպլանի Հայկական ՍՍՌ լիազորի— Հայկական ՍՍՌ ժողտնտեսության զարգացման պետական պլանի 1948 թվի երկրորդ եռամսյակի կատարման արդյունքների մասին («Սովետական Հայաստան», 15 հուլիսի 1948 թ.)։

3. 1948 թ. հուլիսի 11-ի «Պրավդայի» առաջնորդողը։

ԹԵՄԱ

ԱՇԽԱՏԱՆՔԱՅԻՆ ԿԱՐԳԱՊԱՀՈՒԹՅԱՆ ԱՄՐԱՊՆԴՈՒՄԸ ԳՅՈՒՂԱՏՆՏԵՍՈՒԹՅԱՆ ՀԵՏԱԳԱ ՎԵՐԵԼՔԻ ԵՎ ԿՈԼԽՈԶՆԵՐԻ ԿԱԶՄԱԿԵՐՊԱԿԱՆ-ՏՆՏԵՍԱԿԱՆ ԱՄՐԱՊՆԴՄԱՆ ԿԱՐԵՎՈՐ ՊԱՅՄԱՆՆ Է։

ՊԼԱՆ

1. Այս տարի բարձր բերքի համար մղված պայքարում ձեռք բերված լուրջ հաջո-



ղությունները՝ կոլխոզնիկների մեծագույն մասի անձնուրաց աշխատանքի և պարտիայի ու կառավարության կողմից գյուղատնտեսությանը ցույց տրված հսկայական օգնության արդյունքն են։

2. Աշխատանքային կարգապահության հետագա ամրապնդումը— անհրաժեշտ պայմանն է գյուղատնտեսության նոր վերելքի, կոլխոզների հանրային հարստության աճի և կոլխոզնիկների բարեկեցության բարձրացման համար։

3. Գյուղատնտեսության առաջավորներին և սոցիալիստական աշխատանքի հերոսներին հավասարվելն ու նրանց փորձի յուրացումը— բոլոր կոլխոզնիկների և կոլխոզնիկուհիների պատվի գործն է։

4. Աշխօրերի սահմանված մինիմումի անվերապահ կատարումը, արտադրական նորմաների կատարումը և գյուղատնտեսական արտելի կանոնադրության պահպանումը բոլոր կոլխոզնիկների և կոլխոզնիկուհիների սրբազան պարտքն է։

5. Լոդրերի, հակահասարակական և պարազիտային տարրերի դեմ մղվող պայքարը— կարգապահության ամրապնդման և կոլխոզներում աշխատանքի կազմակերպումը բարելավելու կարևորագույն պայմանն է։

*6. Ինչպե՞ս է գնում պայքարը կարգապահության ամրապնդման և աշխատանքի կազմակերպումը բարելավելու համար մեր օղակում, բրիգադայում, կոլխոզում։*

ԳՐԱԿԱՆՈՒԹՅՈՒՆ

Վ. Ի. ԼԵՆԻՆ.— *Աշխատանքային կարգապահության մասին (Երկեր, ռուս. հրատ. հատ. 30-րդ, էջ 402)։*

Ի. Վ. ՍՏԱԼԻՆ.— *Ճառ հարվածային կոլխոզնիկների համամիութենական առաջին համագումարում։*

*ՍՍՌՄ Մինիստրների Սովետի որոշումը՝ «Կոլխոզներում աշխատանքի կազմակերպումը բարելավելու, արտադրողականությունը բարձրացնելու և վարձատրությունը կարգավորելու միջոցառումների մասին» («Սովետական Հայաստան», 25 հունիսի 1948 թ.)։*

*1948 թ. հունիսի 11-ի «Իզվեստիա» թերթի առաջնորդողը։*

Ֆ. ԿՈՇԵԼԵՎ.— *«Աշխատանքային բարձր կարգապահությունը հզոր զենք է կոլխոզային կարգի ծաղկման համար մղվող պայքարում» («Սովետական Հայաստան» №№ 164, 165)։*

---



# ԴԻՄԱԴՐՈՒԹՅԱՆ ՇԱՐԺՈՒՄԸ ԻՍՊԱՆԻԱՅՈՒՄ

*Թեև պատերազմը Եվրոպայում ավարտվեց ֆաշիստական ագրեսորների լիակատար ջախջախումով, սակայն նրանց առաջին զոհը— Իսպանիան— դեռևս շարունակում է օկուպացված մնալ «ֆյուրերի» դաշնակցի— «կաուդիլյոյի» գլխավորությամբ հիտլերականների իսպանական թափթփուկների կողմից։*

*Այդ են ցանկանում Ֆրանկոյի նոր (իսկ ըստ էության հին) տերերը—Ուոլ-ստրիտը և լոնդոնյան Սիտիի պարագլուխները։ Նրանք աջակցում են Ֆրանկոյի տեռորիստական ռեժիմին ոչ միայն նրա համար, որ նրանում տեսնում են ապագա «մարշալականացված» Եվրոպայի մի ինչ-որ նախատիպ, այլև նրա համար, որ այսուհետ «կաուդիլյոն» լայն հնարավորություններ է վերապահում անգլո-ամերիկյան էքսպանսիոնիստներին Իսպանիան արևմտա-եվրոպական երկրների դեմոկրատական շարժումների դեմ պայքարելու բազա դարձնելու համար։*

*Իմպերիալիստական մոնոպոլիաներին և Վատիկանին վարձված ծառայական գրչակները թանաքի հե-*

ղեղներ են թափում, ապարդյուն փորձեր կատարելով այդ աջակցությունը «հիմնավորելու» «մարդասիրական» նկատառումներով։ Նրանք փորձում են համաշխարհային հասարակական կարծիքը ներշնչել այն համոզմունքով, որ Իսպանիայում գոյություն ունեցող կարգերի արմատական փոփոխման ամեն մի փորձ կըհանգեցներ քաղաքացիական պատերազմի վերսկսմանը և որ հետևապես, Ֆրանկոյի ռեժիմի պահպանումը իբր թե նպաստում է երկրում քաղաքացիական խաղաղության պահպանմանը։

Ծանոթանալով ներկայիս իսպանական իրականության հետ հեշտ է համոզվել նման հորինումների հրեշավոր կեղծիքի և երկերեսանիության մեջ. ահա արդեն տասներկու տարի է Իսպանիայում չի դադարում քաղաքացիական պատերազմը, ժողովուրդը չի ցանկանում հաշտվել Ֆրանկոյի ֆաշիստական ռեժիմի հետ և շարունակում է պայքարը սոսր դիկտատորի դեմ։

Իշխանությունը զավթելուց հետո ֆալանգիստները բնաջնջել են 300 հազարից ավելի հայրենասերների։ Երկու միլիոնից ավելի մարդ եղել է ֆաշիստական զնդաններում։ Արտասահմանյան մամուլի տվյալներով ներկայումս Ֆրանկոյի բանտերում տանջվում են մոտ 200 հազար քաղաքական բանտարկյալներ։

Մի՞թե այդ փաստերը չեն վկայում, որ Ֆրանկոն ժողովրդի մեծամասնության դեմ մղում է ոչնչացնող պատերազմ և, որ չմղելով այդպիսի պատերազմ, նա



չէր կարող ընդհանրապես իր ձեռքում պահել իշխանությունը։

Այդ մասին պերճախոս կերպով ասում են նաև Ֆրանկոյի կառավարության դեկրետները։ Անցյալ տարվա մայիսի սկզբին Մադրիդում հրատարակված օրենքը մահվան է դատապարտում ամեն մի արարքի համար, որն իշխանությունները կհամարեն ուղղված ռեժիմի դեմ։ Դրանից մեկ ամիս ուշ գաղտնի կարգով հրատարակվել է «օրենք փախուստների մասին», ըստ որի ոստիկանությունն իրավունք ունի գնդակահարելու «փախուստի փորձ կատարող», ռեժիմին անհաճելի անձանց (դա, սակայն մինչ այդ էլ լայնորեն գործադրվում էր)։ Անցյալ տարվա հոկտեմբերին ֆալանգի ազգային կոմիտեն Սեվիլիայում կայացած գաղտնի նիստում նոր որոշում ընդունեց «ձախ տարրերի» դեմ ռեպրեսիվ միջոցները ուժեղացնելու մասին։ Նույն ժամում բանակի գլխավոր վարչությունը գաղտնի շրջաբերական է ուղարկում քաղաքական բանտարկյալների թվի ավելացման կապակցությամբ բանտային։ Էլ ավելի խիստ ռեժիմ մտցնելու մասին։ Կես տարվա ընթացքում՝ չորս դեկրետ տեռորը ուժեղացնելու մասին։

Սակայն դրակոնյան ռեպրեսիաները չկոտրեցին Իսպանիայի աշխատավորների կամքը ազատության համար մղվող պայքարում։

Վերջին երկու տարվա ընթացքում երկրում տեղի են ունեցել հարյուրավոր գործադուլներ, որոնց մաս-

ճանկցել են կես միլիոնից ավելի բանվորներ։ Գործադուլավորները պահանջում էին ավելացնել քաղցի օրապահիկը, բարձրացնել աշխատավարձը և բողոքում էին իշխանությունների կամայականությունների դեմ։ Ցաշիստները իրենք են խոստովանում, որ գործադուլային շարժումը կազմակերպված բնույթ է կրում։

Գործադուլավորների դեմ ուղղված դատական նիստերից մեկում Մադրիդի ռազմական տրիբունալի նախագահը հայտարարեց. «Չի կարող պատահել, որ առանց որևէ կազմակերպվածության վերջին երկու ամսվա ընթացքում Մադրիդում տեղի ունենային 60 գործադուլներ»։

Անցյալ տարվա մայիսյան գործադուլների ժամանակ Բասկոնիայի վաթսուն հազար բանվորներ ինը օր տևողությամբ դիմադրեցին երկրի զանազան շրջաններից այստեղ քաշված ոստիկանությանը և զորամասերին։ Ինչպես այդ, նույնպես և մյուս գործադուլները, կրում էին վառ կերպով արտահայտված քաղաքական բնույթ։ Վերջին ամիսներում գործադուլային նոր ալիք է ընդգրկել Կատալոնիան և երկրի մյուս մարզերը։

Իսպանական միլիոնավոր գյուղացիներ նույնպես պայքարում են Ֆրանկոյի ռեժիմի դեմ, խուսափում են ուժից վեր հարկեր վճարելուց, բողոքում են շահագործման ֆեոդալական ձևերի և կալվածատերերի ու ֆալանգիստական չինովնիկների կամայականության դեմ։



Սակայն դիմադրության շարժման ամենից ավելի բնորոշ գիծը հանդիսանում է պարտիզանական շարժման բուռն ուժեղացումը։ Այդ շարժումն սկսվել է Ֆրանկոյի իշխանության գլուխ անցնելու ժամանակից և ավելի աճելով շարունակվում է մինչև օրս։ Սակայն եթե սկզբնական շրջանում պարտիզանական պայքար էին մղում լեռներում թաքնված ռեսպուբլիկական բանակի փոքրաթիվ, միմյանցից անջատ ջոկատներ, ապա այժմ Իսպանիայի մի շարք նահանգներում գործում են արդեն ամբողջ պարտիզանական միավորումներ, որոնց ղեկավարում են շտաբներ և որոնք բազմաթիվ անտեսանելի, սակայն անխզելի թելերով կապված են տեղական բնակչության հետ։

Տեղական բնակիչների կողմից պարտիզաններին ցույց տրվող աջակցությունը առաջացնում է իշխանությունների կատաղի զայրույթ։ Լա Կորունյա քաղաքում, Գալիցիայի 24 դեմոկրատների դատավարության ժամանակ, որոնք մեղադրվում էին պարտիզանների հետ ունեցած կապի մեջ, դատախազը հայտարարել է՝ «...Լեռներում գործող ջոկատները (պարտիզանները) նրանց հետ համագործակցող և նրանց օգնող այլ մարդկանցից ստանում են էական աջակցություն։ Նրանք թաքցնում են պարտիզաններին, ապահովում են նրանց կապը, տեղեկություններ են հաղորդում պաշտոնական անձանց մասին»։

Լևանտի և Արագոնիայի պարտիզանական միավորումների դեմ Ֆրանկոյի զորքերի անցյալ տարվա ձեռ-

նարկած եռակի հարձակումը ոչնչի չհասցրեց— այդ մասին կարելի է դատել հենց նրանով, որ այս ամսանը ֆալանգիստները այստեղ նորից վերսկսել են ռազմական գործողությունները։

Այդ պատժիչ գործողությունների բնույթի մասին պատկերացում է տալիս 1948 թվականի մայիսի 27-ին «Մունդո Օբրերո» թերթի հրապարակած Լևանտի և Արագոնիայի պարտիզանական միավորումների, Իսպանիայի բոլոր հակաֆրանկիստներին ուղղած կոչը։

«Ընտրովի զորքերի դիվիզիաները, հրետանու և հետախուզիչ ավիացիայի պաշտպանությամբ—ասված է կոչի մեջ—նետված են մեր պարտիզանական միավորման դեմ։ Անընդունակ լինելով ոչնչացնել մեզ, նրանք իրենց հանցագործ և անզոր կատաղությունը թափում են գյուղական բնակչության վրա, որը չի հրաժարվել իրեն հաց, հող և ազատություն տվող ռեսպուբլիկայից։ Ֆրանկոյի ռեպրեսիվ ուժերով գազանային ավերիչ պատերազմ է մղվում Լևանտում և Արագոնիայում...

Սակայն, չնայած ռեպրեսիաներին, մենք ամուր կանգնած ենք ոտքերի վրա և շարունակում ենք պայքարը։ Մենք զենքը ցած չենք դնի, մինչև մեր ժողովուրդը ազատ չլինի, մինչև Իսպանիայում չվերականգնվեն ազատությունն ու դեմոկրատիան...»։

Չնայած պատժիչ ջոկատների դաժանություններին, պարտիզաններին միանում են հազարավոր նոր կողմնակիցներ։



Լևանտի և Արագոնիայի պարտիզանները նախաձեռնությամբ են վերցրել Իսպանիայի բոլոր հակաֆրանկիստներին միավորելու համար։ Նրանք կոչ են արել Գալիցիայի և Էստրեմադուրայի, Աստուրիայի և Սանտանդերի, Լեոնի և Կատալոնիայի, Անդալուզիայի և կենտրոնի, ինչպես նաև ընդհատակյա հակաֆրանկիստական պարտիաների և խմբակների ներկայացուցիչներին՝ ստեղծել Իսպանիայի դիմադրության կենտրոնական խորհուրդ, որը կմիավորեր և կղեկավարեր արյունոտ «կաուդիլյոյի» ռեժիմի դեմ ակտիվ պայքարող բոլոր ուժերը։

Այդ կոչը, որին պաշտպանում է Իսպանիայի կոմպարտիայի ղեկավարությունը, ջերմ արձագանք գտավ իսպանական ժողովրդի դեմոկրատական խավերի մեջ։

Տասնյակ ընդհատակյա թերթեր, որ հրատարակվում է երկրում կոմպարտիան, հաղորդում են ժողովրդին, ֆաշիստական լծի դեմ ուղղված հայրենասերների անձող դիմադրության մասին, հակառակ Ֆրանկոյի բոլոր ջանքերի և այն օգնության, որ նրան ցույց են տալիս անգլո-ամերիկյան հովանավորողները։

Իր ազատության և անկախության համար իսպանական ժողովրդի մղած պայքարը միաձուլվում է դեմոկրատական լագերի պայքարի ընդհանուր ճակատի հետ՝ հանուն կայուն խաղաղության և ժողովրդական դեմոկրատիայի։ Այս է ազատ և խաղաղասեր Իսպանիայի հաղթանակի երաշխիքը։ Գ. ՆԻԿՈԼԱԵՎ

## ՆՈՐ ԳՐՔԵՐ

*Հայաստանի Պետական հրատարակչությամբ լույս են տեսել հետևյալ գրքերն ու բրոշյուրները։ «Զրույցներ երիտասարդ կոմերիտականների հետ» սերիայով՝*

1. *Ն. ԼԵՎԻՏԻՆ.*— «Պարտիան և կոմերիտմիությունը»։ *Տիրաժ 5.000 օրինակ, 22 էջ, գինը՝ 50 կոպ., 1948 թ.։*

2. *Լ. ՍԼԻՊՈՎ.*— «ՀամԿ(բ)Պ ընդունելության պայմաններն ու կարգը»։ *Տիրաժ 5.000 օրինակ, 23 էջ, գինը՝ 1 ռուբլի, 1948 թ.։*

3. «Զրույցներ գյուղատնտեսական արտելի կանոնադրության մասին» *(ժողովածու) հետևյալ բովանդակությամբ՝ Գյուղատնտեսական արտելի ստալինյան կանոնադրությունը՝ կոլխոզային կյանքի հիմնական օրենքն է։ Հանրային հողը՝ կոլխոզային կարգերի ուժի ու ամրության աղբյուրն է։ Հանրային սեփականությունը կոլխոզային կարգերի հիմքն է։ Աշխօրը կոլխոզում։ Կոլխոզների կառավարման դեմոկրատական հիմունքները։ Տիրաժ 3.000 օրինակ, 64 էջ, գինը՝ 3 ռ, 1948 թ.։*

4. «Լենինյան կոմերիտմիության մարտական ուղին», *(Օգնություն ՀամԼԿԵՄ կանոնադրության ուսումնասիրողներին, 2-րդ*



*պրակ)։ Տիրաժ 10.000 օրինակ, 219 էջ, գինը՝ 5 ռ. 1948 թ.։*

*«Կոլխոզնիկի գրադարան» սերիայով՝*

5. *Ն. Ա. ՄԱՔՍԻՄՈՎ.*— «Ինչից է առաջանում երաշտը և ինչպես պայքարել նրա դեմ»։ *Տիրաժ 3000 օրինակ, 36 էջ, գինը 1 ռուբլի, 1948 թ.։*

*Հայկական ՍՍՌ Պետական Հեռակա Մանկավարժական Ինստիտուտի հրատարակչությամբ։*

6. *Պրոֆ. Վ. Ս. ԿՐՈՒԺԿՈՎ*— «Ընկեր Ստալինի «Անարխիզմ թե սոցիալիզմ» աշխատությունը»։ *Տիրաժ 1500 օրինակ, 34 էջ, գինը՝ 1 ռ. 50 կոպ. 1948 թ.։*

Պատասխանատու խմբագիր՝
Ա. ՔՈԹԱՆՋՅԱՆ

*ՎՖ 04387 Պատվեր № 576 Տիրաժ 9.300*
*Ստորագրված է տպագրության 30/VIII 1948 թ.*
*Պոլիգրաֆ. և Հրատ. Վարչ. № 2 տպարան, Երևան*

Отдел Пропаганды и агитации ЦК КП(б) Армении
Блокнот Агитатора


0 100 200 կմ.
ՖՐԱՆՍԻԱ
Սանտանդեր
Բիլբաո
Լա-Կորունյա
Օվեդո
ԱՍՏՈՒՐԻԱ
ԲԱՍԿՈՆԻԱ
ԳԱԼԻՑԻԱ
Պամպլոնա
Լեոն
ԼԵՈՆ
ԱՐԱԳՈՆԻԱ
Վալիադոլիդ
Սարագոսսա
Բարսելոնա
Տարրագոնա
Սալամանկա
ՄԱԴՐԻԴ
ԻՍՊԱՆԻԱ
ԷՍՏՐԵՄԱԴՈՒՐԱ
ՊՈՐՏՈՒԳԱԼԻԱ
ԼԻՍՍԱԲՈՆ
Տոլեդո
Վալենսիա
Բալեարյան կղզիներ
Ալիկանտե
Կորդովա
ԱՆԴԱԼՈՒԶԻԱ
Սեվիլիա
Գրանադա
Ալմերիա
Մալագա
Կադիս
Ջիբրալթար
Տանժեր
ՄԻՋԵՐԿՐԱԿԱՆ ԾՈՎ
ԻՍՊ. ՄԱՐՈԿԿՈ
ՊԱՐՏԻԶԱՆԱԿԱՆ ՊԱՏԵՐԱԶՄԻ ՇՐՋԱՆՆԵՐ

